Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 4 (47)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1946

# ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՃԱՌԸ

## ՄՈՍԿՎԱ ՔԱՂԱՔԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳԻ ԸՆՏՐՈՂՆԵՐԻ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՄ

### 1946 ԹՎԻ ՓԵՏՐՎԱՐԻ 9-ԻՆ

*ՆԱԽԱԳԱՀ.*

*Խոսքը տրվում է Իոսիֆ Վիսսարիոնովիչ* Ստալինին:

(Տրիբունայի վրա ընկեր Ստալինի երևալը ընտրողների կողմից դիմավորվում է բուռն օվացիայով, որը տևում է մի քանի րոպե: Մեծ Թատրոնի ամբողջ դահլիճը ոտնկայս ողջունում է ընկեր Ստալինին: Դահլիճից անընդհատ լսվում են բացականչություններ. «Մեծ Ստալինին, ուռա՜», «Կեցցե՜ մեծ Ստալինը, ուռա՜», «Հարազատ Ստալինին, ուռա՜»):

**ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆ.**

*Ընկերնե՛ր:*

*Գերագույն Սովետի վերջին ընտրությունների ժամանակվանից անցել է ութ տարի: Դա վճռական քնույթի իրադարձություններով հարուստ ժամանակաշրջան էր: Առաջին չորս տարիներն անցան երրորդ հնգամյակի իրագործման համար սովետական մարդկանց լարված աշխատանքի մեջ: Երկրորդ չորս տարիները ընդգրկում են գերմանական և ճապոնական ագրեսորների դեմ մղված պատերազմի իրադարձությունները՝ երկրորդ համաշխարհային պատերազմի իրադարձությունները: Անտարակույս, պատերազմը անցած ժամանակաշրջանի գլխավոր մոմենտն է:*

*Ճիշտ չեր լինի մտածել, որ երկրորդ համաշխարհային պատերազմը ծագեց պատահականորեն կամ*

թե այս կամ այն պետական գործիչների սխալների հետևանքով, թեև սխալներ, անտարակույս, տեղի են ունեցել։ Իրականում պատերազմը ծագեց որպես ժամանակակից մոնոպոլիստական կապիտալիզմի բազայի վրա համաշխարհային տնտեսական ու քաղաքական ուժերի զարգացման անխուսափելի հետևանք։ Մարքսիստները բազմիցս հայտարարում էին, որ համաշխարհային տնտեսության կապիտալիստական սիստեմը իր մեջ ունի ընդհանուր ճգնաժամի և ռազմական ընդհարումների տարրեր, որ այդ պատճառով համաշխարհային կապիտալիզմի զարգացումը մեր ժամանակ տեղի է ունենում ո՛չ թե սահուն ու հավասարաչափ առաջընթացի ձևով, այլ ճգնաժամերի և ռազմական կատաստրոֆների միջոցով։ Բանն այն է, որ կապիտալիստական երկրների զարգացման անհավասարաչափությունը սովորաբար որոշ ժամանակից հետո հանգեցնում է հավասարակշռության սուր խախտման կապիտալիզմի համաշխարհային սիստեմի ներսում, ըստ որում կապիտալիստական երկրների այն խումբը, որն իրեն համարում է հումքով և վաճառահանման շուկաներով նվազ ապահովված, սովորաբար փորձեր է կատարում զինված ուժ գործադրելու միջոցով փոփոխելու դրությունը և իր օգտին վերաբաժանելու «ազդեցության ոլորտները»։ Դրա հետևանքով կապիտալիստական աշխարհը պառակտվում է երկու թշնամական բանակի և նրանց միջև ծագում է պատերազմ։

Թերևս կարելի լիներ խուսափել ռազմական կատաստրոֆներից, եթե հնարավոր լիներ համաձայնեցված և խաղաղ որոշումներ կայացնելու կարգով երկրների միջև պարբերաբար վերաբաշխել հումքը և վաճառահանման շուկաները համաձայն նրանց տնտեսական կշռի։ Սակայն, այդ բանը հնարավոր չէ իրագործել համաշխարհային տնտեսության զարգացման ներկա կապիտալիստական պայմաններում։

Այսպիսով համաշխարհային տնտեսության կապիտալիստական սիստեմի առաջին ճգնաժամի հետևան-



քով ծագեց առաջին համաշխարհային պատերազմը, իսկ երկրորդ ճգնաժամի հետևանքով ծագեց երկրորդ համաշխարհային պատերազմը։

Դա, իհարկե, չի նշանակում, թե երկրորդ համաշխարհային պատերազմը առաջինի պատճենն է։ Ընդհակառակը, երկրորդ համաշխարհային պատերազմը էապես տարբերվում է առաջինից իր բնույթով։ Պետք է նկատի ունենալ, որ ֆաշիստական գլխավոր պետությունները՝ Գերմանիան, Ճապոնիան, Իտալիան՝ դաշնակից երկրների վրա հարձակվելուց առաջ իրենց մոտ ոչնչացրին բուրժուական-դեմոկրատական ազատությունների վերջին մնացորդները, իրենց մոտ հաստատեցին տեռորիստական դաժան ռեժիմ, ոտնակոխարին փոքր երկրների սուվերենության և ազատ զարգացման սկզբունքը, ուրիշների հողերը զավթելու քաղաքականությունը հայտարարեցին իրենց սեփական քաղաքականություն և ազդարարեցին ի լուր ամենքի, որ իրենք ձգտում են համաշխարհային տիրապետության և ֆաշիստական ռեժիմի տարածման ամբողջ աշխարհում, ըստ որում Չեխո-Սլովակիան և Չինաստանի կենտրոնական շրջանները զավթելով. առանցքի պետությունները ցույց տվին, որ իրենք պատրաստ են իրագործելու բոլոր ազատասեր ժողովուրդներին ստրկացնելու վերաբերյալ իրենց սպառնալիքը։ Այդ պատճառով առանցքի պետությունների դեմ մղված երկրորդ համաշխարհային պատերազմը, ի տարբերություն առաջին համաշխարհային պատերազմից, հենց սկզբից ընդունեց հակաֆաշիստական, ազատագրական պատերազմի բնույթ, որի խնդիրներից մեկն էր նաև վերականգնել դեմոկրատական ազատությունները։ Առանցքի պետությունների դեմ մղվող պատերազմի մեջ Սովետական Միության մտնելը կարող էր միայն ուժեղացնել,— և իսկապես ուժեղացրեց,— երկրորդ համաշխարհային պատերազմի հակաֆաշիստական և ազատագրական բնույթը։

Այդ հողի վրա էլ ստեղծվեց Սովետական Միու-

թյան, Ամերիկայի Միացյալ Նահանգների, Մեծ Բրիտանիայի և մյուս ազատասեր պետությունների հակաֆաշիստական կոալիցիան, որը հետո վճռական դեր խաղաց առանցքի պետությունների զինված ուժերը ջախջախելու գործում։

Այսպես է երկրորդ համաշխարհային պատերազմի ծագման և բնույթի հարցի դրությունը։

Այժմ, թերևս, բոլորը խոստովանում են, որ պատերազմը ժողովուրդների կյանքում իրոք պատահականություն չէր և չէր կարող լինել, որ նա գործնականում վերածվեց ժողովուրդների պատերազմի հանուն իրենց գոյության, որ հենց դրա համար նա չէր կարող լինել արագընթաց, կայծակնային։

Ինչ վերաբերում է մեր երկրին, ապա նրա համար այդ պատերազմը մեր Հայրենիքի պատմության մեջ երբևիցե վերապրած բոլոր պատերազմներից ամենադաժանը և ամենածանրն էր։

Բայց պատերազմը միայն նզո՛վք չէր։ Պատերազմը դրա հետ միասին ժողովրդի բոլոր ուժերի փորձության ու ստուգման մեծ դպրոց էր։ Պատերազմը մերկացրեց բոլոր փաստերն ու իրադարձությունները թիկունքում և ռազմաճակատում, նա անողոք կերպով պատռեց պետությունների, կառավարությունների, պարտիաների իսկական դեմքը ծածկող բոլոր քողերն ու ծածկոցները և նրանց բեմ դուրս բերեց առանց դիմակի, առանց գունազարդումների, նրանց բոլոր թերություններով և արժանիքներով հանդերձ։ Պատերազմը քննության նման ինչ-որ բան սարքեց մեր սովետական հասարակակարգի, մեր պետության, մեր կառավարության, մեր կոմունիստական պարտիայի համար և հանրագումարի բերեց նրանց աշխատանքը, կարծես թե ասելով մեզ. ահա նրանք, ձեր մարդիկ ու կազմակերպությունները, նրանց գործերն ու օրերը, նայեցեք նրանց ուշադրությամբ և հատուցեք իրենց գործերի համեմատ։

Դա պատերազմի դրական կողմերից մեկն է։



Մեզ, ընտրողներիս համար, այդ հանգամանքը մեծ նշանակություն ունի, որովհետև դա մեզ օգնում է արագ և օբյեկտիվորեն գնահատելու պարտիայի ու նրա մարդկանց գործունեությունը և ճիշտ հետևություններ անելու։ Ուրիշ ժամանակ հարկ կլիներ ուսումնասիրել պարտիայի ներկայացուցիչների ելույթները և զեկուցումները, վերլուծել դրանք, համադրել նրանց խոսքերը նրանց գործերի հետ, կատարել ամփոփումներ և այլն։ Դա պահանջում է բարդ և խոշոր աշխատանք, ընդ որում երաշխիք չկա, որ սխալներ թույլ չեն տրվի։ Այլ բան է այժմ, երբ պատերազմը ավարտված է, երբ պատերազմը ինքը ստուգել է մեր կազմակերպությունների ու ղեկավարների աշխատանքը և կատարել աշխատանքի արդյունքների հանրագումարը։ Այժմ մեզ համար շատ ավելի հեշտ է հասկանալ և հանգել ճիշտ հետևությունների։

Այսպես ուրեմն, որո՞նք են պատերազմի արդյունքները։

Գոյություն ունի մեկ գլխավոր արդյունք, որի հիման վրա ծագել են մյուս բոլոր արդյունքները։ Այդ արդյունքն այն է, որ պատերազմի վերջում թշնամիները կրեցին պարտություն, իսկ մենք մեր դաշնակիցների հետ դուրս եկանք հաղթող։ Մենք պատերազմը ավարտեցինք լիակատար հաղթանակ տանելով թշնամիների դեմ.— դա պատերազմի գլխավոր արդյունքն է։ Բայց դա շատ ընդհանուր արդյունք է, և մենք չենք կարող այստեղ վերջակետ դնել։ Իհարկե, թշնամիներին ջախջախելը այնպիսի պատերազմում, ինչպիսին երկրորդ համաշխարհային պատերազմն էր, որպիսին դեռևս չէր եղել մարդկության պատմության մեջ, նշանակում է հասնել համաշխարհային-պատմական հաղթանակի։ Այս բոլորը ճիշտ է։ Սակայն դա, այնուամենայնիվ, ընդհանուր արդյունքն է, և մենք չենք կարող հանգստանալ դրանով։ Մեր հաղթանակի պատմական մեծ նշանակությունը հասկանալու համար անհրաժեշտ է ավելի կոնկրետ կերպով պարզել այդ բանը։

Այսպես ուրեմն, ինչպե՞ս պետք է հասկանալ թշնամիների դեմ մեր տարած հաղթանակը, ի՞նչ կարող է նշանակել այդ հաղթանակը մեր երկրի ներքին ուժերի դրության և զարգացման տեսակետից:

Մեր հաղթանակը նշանակում է, ամենից առաջ, որ հաղթեց մեր սովետական հասարակակարգը, որ սովետական հասարակակարգը հաջողությամբ բռնեց քննությունը պատերազմի կրակի մեջ և ապացուցեց իր լիակատար կենսունակությունը:

Ինչպես հայտնի է, օտարերկրյա մամուլում բազմիցս պնդումներ են եղել, թե սովետական հասարակակարգը հանդիսանում է ձախողման դատապարտված «ռիսկոտ էքսպերիմենտ», թե սովետական հասարակակարգը կյանքում արմատներ չունեցող և ՉԵԿԱ-յի օրգանների կողմից ժողովրդի վզին փաթաթված «թղթե տնակ» է, թե բավական է դրսից փոքրիկ հարված, որ այդ «թղթե տնակը» հօդս ցնդի:

Այժմ մենք կարող ենք ասել, որ պատերազմը տապալեց օտարերկրյա մամուլի այդ բոլոր պնդումները, որպես անհիմն պնդումներ: Պատերազմը ցույց տվեց, որ սովետական հասարակակարգը ժողովրդի ընդերքից աճած և նրա հզոր օժանդակությունը վայելող իսկական ժողովրդական հասարակակարգ է, որ սովետական հասարակակարգը հասարակության կազմակերպման միանգամայն կենսունակ և կայուն ձև է:

Ավելին: Այժմ խոսքը արդեն չի վերաբերում այն բանին, թե սովետական հասարակակարգը կենսունակ է, թե ոչ, որովհետև պատերազմի ակնառու դասերից հետո սկեպտիկներից ոչ ոք չի համարձակվում այլևս կասկածներով հանդես գալ սովետական հասարակակարգի կենսունակության վերաբերյալ: Այժմ խոսքն այն մասին է, որ սովետական հասարակակարգը ավելի կենսունակ և կայուն դուրս եկավ, քան ոչ-սովետական հասարակակարգը, որ սովետական հասարակակարգը հանդիսանում է հասարակության կազմա-



կերպման ավելի լավ ձև, քան որևէ այլ, ոչ-սովետական հասարակակարգ:

Մեր հաղթանակը նշանակում է, երկրորդ, որ հաղթեց մեր սովետական պետական կարգը, որ մեր սովետական բազմազգ պետությունը դիմացավ պատերազմի բոլոր փորձություններին և ապացուցեց իր կենսունակությունը:

Ինչպես հայտնի է, օտարերկրյա մամուլի ականավոր գործիչները բազմիցս արտահայտվել են այն ոգով, թե սովետական բազմազգ պետությունը «արհեստական և անկենդան կառուցվածք է», թե որևէ բարդության դեպքում Սովետական Միության քայքայումը անխուսափելի է, թե Սովետական Միությանը սպասում է Ավստրո-Հունգարիայի ճակատագիրը:

Այժմ մենք կարող ենք ասել, որ պատերազմը հերքեց օտարերկրյա մամուլի այդ հայտարարությունները, որպես ամեն հիմքից զուրկ հայտարարություններ: Պատերազմը ցույց տվեց, որ սովետական բազմազգ պետական կարգը հաջողությամբ բռնեց քննությունը, է՛լ ավելի ամրապնդվեց պատերազմի ժամանակ և դուրս եկավ միանգամայն կենսունակ պետական կարգ: Այդ պարոնները չհասկացան, որ Ավստրո-Հունգարիայի հետ նմանեցնելը անհիմն է, որովհետև մեր բազմազգ պետությունը աճել է ո՛չ թե բուրժուական հիման վրա, որը խթանում է ազգային անվստահության և ազգային թշնամանքի զգացմունքներ, այլ սովետական հիման վրա, որն, ընդհակառակը, բարեկամության և եղբայրական համագործակցության զգացմունքներ է արմատավորում մեր պետության ժողովուրդների միջև:

Ասենք, պատերազմի դասերից հետո այդ պարոնները այլևս չեն համարձակվում հանդես գալ սովետական պետական կարգի կենսունակության ժխտումով: Այժմ խոսքը արդեն սովետական պետական կարգի կենսունակությանը չի վերաբերում, որովհետև նրա կենսունակությունը կասկածի ենթակա չէ: Այժմ խոսքը վերաբերում է այն բանին, որ սովե-

տական պետական կարգը հանդիսացավ բազմազգ պե-
տության օրինակ, որ սովետական պետական կարգը
պետական կազմակերպության այնպիսի սիստեմ է,
որտեղ ազգային հարցը և ազգերի համագործակցու-
թյան պրոբլեմը ավելի լավ են լուծված, քան որևէ այլ
բազմազգ պետության մեջ։

Մեր հաղթանակը նշանակում է, երրորդ, որ հաղ-
թեցին սովետական զինված ուժերը, հաղթեց մեր Կար-
միր Բանակը, որ Կարմիր Բանակը հերոսաբար դի-
մացավ պատերազմի բոլոր ձախորդություններին, գըլ-
խովին ջախջախեց մեր թշնամիների բանակները և
պատերազմից դուրս եկավ հաղթող։ (Բացականչու-
թյուն տեղից՝ «Ընկեր Ստալինի ղեկավարությամբ»:
Բոլորը ոտքի են կանգնում: Բուռն, երկար ժամանակ
չդադարող ծափահարություններ, որոնք վերածվում են
օվացիայի)։

Այժմ բոլորը, ինչպես բարեկամները, այնպես էլ
թշնամիները, խոստովանում են, որ Կարմիր Բանակը
գտնվեց իր մեծ խնդիրների բարձրության վրա։ Սա-
կայն, բանը այդպես չէր վեց տարի առաջ, պատերազ-
մի նախօրյակին։ Ինչպես հայտնի է, օտարերկրյա մա-
մուլի ականավոր գործիչները և ռազմական գործի ճա-
նաչված շատ հեղինակություններ արտասահմանում
բազմիցս հայտարարում էին, թե Կարմիր Բանակի վի-
ճակը մեծ կասկածներ է ներշնչում, թե Կարմիր Բա-
նակը վատ է զինված և չունի իսկական հրամանատա-
րական կազմ, թե նրա բարոյական վիճակը ցած է ա-
մեն մի քննադատությունից, թե նա գուցե և պիտանի
լինի պաշտպանության համար, բայց հարձակման հա-
մար պիտանի չէ, թե գերմանական զորքերի կողմից
տրված հարվածի դեպքում Կարմիր Բանակը կքայքայ-
վի «կավե ոտներով հսկայի» նման։ Այսպիսի հայտա-
րարություններ արվում էին ոչ միայն Գերմանիայում,
այլև Ֆրանսիայում, Անգլիայում, Ամերիկայում։

Այժմ մենք կարող ենք ասել, որ պատերազմը տապա-
լեց այդ բոլոր հայտարարությունները որպես անհիմն
և ծիծաղաշարժ հայտարարություններ։ Պատերազմը



ցույց տվեց, որ Կարմիր Բանակը ոչ թե «կավե ոտնե-
րով հսկա» է, այլ մեր ժամանակի առաջնակարգ բանակ,
որն ունի միանգամայն ժամանակակից սպառազինու-
թյուն, ամենափորձված հրամանատարական կազմ և
բարոյական-մարտական բարձր հատկություններ։
Չպետք է մոռանալ, որ Կարմիր Բանակը այն նույն
բանակն է, որը գլխովին ջախջախեց գերմանական
բանակին, որ դեռևս երեկ սարսափ էր տարածում եվ-
րոպական պետությունների բանակների վրա։

Պետք է նշել, որ Կարմիր Բանակի «քննադատնե-
րը» գնալով ավելի ու ավելի են պակասում։ Ավելին,
արտասահմանյան մամուլում ավելի ու ավելի հաճա-
խակի են հոդվածներ երևում, որոնք նշում են Կարմիր
Բանակի բարձր հատկությունները, նրա մարտիկների և
հրամանատարների վարպետությունը, նրա ստրատե-
գիայի և տակտիկայի անթերիությունը։ Դա հասկա-
նալի էլ է։ Մոսկվայի և Ստալինգրադի մոտ, Կուրսկի և
Բելգորոդի մոտ, Կիևի և Կիրովոգրադի մոտ, Մինսկի և
Բոբրույսկի մոտ, Լենինգրադի և Տալլինի մոտ, Յասսիի
և Լվովի մոտ, Վիսլայի և Նեմանի վրա, Դանուբի և
Օդերի վրա, Վիեննայի և Բեռլինի մոտ Կարմիր Բանա-
կի տարած փայլուն հաղթանակներից հետո, այդ բոլո-
րից հետո չի կարելի չխոստովանել, որ Կարմիր Բանա-
կը առաջնակարգ բանակ է, որից կարելի կլիներ շատ
բան սովորել։ (Բուռն ծափահարություններ):

Մենք կոնկրետ կերպով այսպես ենք հասկանում
մեր երկրի հաղթանակը նրա թշնամիների դեմ։

Սրանք են հիմնականում պատերազմի արդյունք-
ները։

Սխալ կլիներ մտածել, թե կարելի է այդպիսի
պատմական հաղթանակի հասնել առանց ամբողջ եր-
կիրը նախապես ակտիվ պաշտպանության նախապատ-
րաստելու։ Ոչ պակաս սխալ կլիներ ենթադրել, թե
այդպիսի նախապատրաստությունը կարելի է կատարել
կարճ ժամկետում, ինչ որ երեք-չորս տարվա ընթաց-
քում։ Ավելի ևս սխալ կլիներ պնդել, թե մենք հաղթա-

նակի ենք հասել սոսկ մեր զորքերի քաջության շնորհիվ։ Առանց քաջության, իհարկե, անհնարին է հաղթանակի հասնել։ Սակայն, սոսկ քաջությունը բավական չէ բազմամարդ բանակ, առաջնակարգ սպառազինություն, լավ մարզված սպայական կադրեր և վատ չդրված մատակարարում ունեցող թշնամուն հաղթահարելու համար։ Այդպիսի թշնամու հարվածը ընդունելու, նրան հակահարված տալու, իսկ այնուհետև նրան լիակատար պարտության մատնելու համար անհրաժեշտ էր, բացի մեր զորքերի անօրինակ քաջությունից, ունենալ միանգամայն ժամանակակից սպառազինություն և այն էլ բավարար քանակով, և լավ կազմակերպված մատակարարում՝ նույնպես բավարար չափերով։ Բայց դրա համար անհրաժեշտ էր ունենալ, և այն էլ բավարար քանակով, այնպիսի տարրական բաներ, ինչպես մետաղ՝ սպառազինություն, հանդերձանք, ձեռնարկությունների սարքավորում արտադրելու համար. վառելանյութ՝ ձեռնարկությունների և տրանսպորտի աշխատանքը ապահովելու համար. բամբակ՝ հագուստ արտադրելու համար. հաց՝ բանակը մատակարարելու համար։

Կարելի՞ է արդյոք պնդել, որ երկրորդ համաշխարհային պատերազմի մեջ մտնելուց առաջ մեր երկիրն արդեն ուներ այդ կարիքները հիմնականում բավարարելու համար պահանջվող նվազագույն-անհրաժեշտ նյութական հնարավորությունները։ Ես կարծում եմ, որ կարելի է պնդել։ Այդ վիթխարի գործի նախապատրաստման համար հարկ եղավ իրագործել ժողովրդական տնտեսության զարգացման երեք հնգամյա պլան։ Հենց այդ երեք հնգամյակները մեզ օգնեցին ստեղծելու այդ նյութական հնարավորությունները։ Համենայն դեպս, մեր երկրի դրությունը այդ տեսակետից երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին, 1940 թվին, մի քանի անգամ ավելի լավ էր, քան առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին, 1913 թվին։



Ի՞նչ նյութական հնարավորություններ ուներ մեր երկիրը երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին։

Այս բանը հասկանալու համար ձեզ օգնելու նպատակով ինձ անհրաժեշտ է այստեղ հակիրճ հաշվետվություն տալ ակտիվ պաշտպանության համար մեր երկիրը նախապատրաստելու ասպարեզում կոմունիստական պարտիայի գործունեության մասին։

Եթե վերցնենք 1940 թվի՝ երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակի տվյալները և դրանք համեմատենք 1913 թվի՝ առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակի տվյալների հետ, ապա մենք կստանանք այսպիսի պատկեր.

1913 թվի ընթացքում մեր երկրում արտադրվել է 4 միլիոն 220 հազար տոննա չուգուն, 4 միլիոն 230 հազար տոննա պողպատ, 29 միլիոն տոննա ածուխ, 9 միլիոն տոննա նավթ, 21 միլիոն 600 հազար տոննա ապրանքային հացահատիկ, 740 հազար տոննա բամբակ։

Սրանք էին մեր երկրի նյութական հնարավորությունները, որոնցով նա մտավ առաջին համաշխարհային պատերազմի մեջ։

Դա հին Ռուսաստանի տնտեսական բազան էր, որը կարող էր օգտագործվել պատերազմը վարելու համար։

Ինչ վերաբերում է 1940 թվին, ապա այդ թվին մեր երկրում արտադրվել է. 15 միլիոն տոննա չուգուն, այսինքն համարյա չորս անգամ ավելի, քան 1913 թվին, 18 միլիոն 300 հազար տոննա պողպատ, այսինքն չորս և կես անգամ ավելի, քան 1913 թվին, 166 միլիոն տոննա ածուխ, այսինքն հինգ և կես անգամ ավելի, քան 1913 թվին, 31 միլիոն տոննա նավթ, այսինքն երեք և կես անգամ ավելի, քան 1913 թվին, 38 միլիոն 300 հազար տոննա ապրանքային հացահատիկ, այսինքն 17 միլիոն տոննայով ավելի, քան 1913 թվին, 2 միլիոն 700 հազար տոննա հում-

թամբակ, այսինքն երեք և կես անգամ ավելի, քան 1913 թվին։

Սրանք էին մեր երկրի նյութական հնարավորությունները, որոնցով նա մտավ երկրորդ համաշխարհային պատերազմի մեջ։

Այս էր Սովետական Միության տնտեսական բազան, որը կարող էր օգտագործվել պատերազմը վարելու համար։

Տարբերությունը, ինչպես տեսնում եք, վիթխարի է։

Արտադրության այսպիսի աննախընթաց աճումը չի կարելի համարել երկրի պարզ ու սովորական զարգացում՝ հետամնացությունից դեպի առաջադիմություն։ Դա թռիչք էր, որի օգնությամբ մեր Հայրենիքը հետամնաց երկրից վերածվեց առաջավոր, ագրարայինից՝ ինդուստրիալ երկրի։

Այդ պատմական վերափոխությունը կատարվեց երեք հնգամյակի ընթացքում, սկսած 1928 թվից՝ առաջին հնգամյակի առաջին տարուց։ Մինչև այդ ժամանակ մենք հարկադրված էինք զբաղվել ավերված արդյունաբերության վերականգնմամբ և առաջին համաշխարհային պատերազմի ու քաղաքացիական պատերազմի հետևանքով ստացած վերքերի բուժմամբ։ Եթե դրա հետ միասին նկատի առնենք այն հանգամանքը, որ առաջին հնգամյակը կատարվեց չորս տարվա ընթացքում, իսկ երրորդ հնգամյակի իրագործումը պատերազմը ընդհատեց նրա կատարման չորրորդ տարում, ապա դուրս է գալիս, որ մեր երկիրը ագրարայինից ինդուստրիալ դարձնելու համար հարկավոր եղավ ընդամենը 13 տարի։

Չի կարելի չընդունել, որ տասներեքամյա ժամկետը անհավատալի կարճ ժամկետ է այդպիսի վիթխարի գործ իրականացնելու համար։

Դրանով էլ, իսկապես ասած, բացատրվում է, որ այս թվերի հրապարակումը իր ժամանակին տարաձայնության փոթորիկ առաջ բերեց արտասահմանյան



մամուլում։ Բարեկամները որոշեցին, որ «հրաշք» է կատարվել։ Իսկ անբարյացակամները հայտարարեցին, թե հնգամյակները «բոլշևիկյան պրոպագանդա» և «ՉեԿԱ-յի ֆոկուսներ» են։ Բայց քանի որ աշխարհում հրաշքներ չեն լինում, իսկ ՉեԿԱ-ն այնպես ուժեղ չէ, որ վերացնի հասարակական զարգացման օրենքները, ապա արտասահմանում «հասարակական կարծիքը» հարկադրված եղավ հաշտվել փաստերի հետ։

Ի՞նչ քաղաքականության շնորհիվ կոմունիստական պարտիային հաջողվեց այդպիսի կարճ ժամկետում երկրում ապահովել այդ նյութական հնարավորությունները։

Ամենից առաջ երկրի ինդուստրացման սովետական քաղաքականության շնորհիվ։

Երկրի ինդուստրացման սովետական մեթոդը արմատապես տարբերվում է ինդուստրացման կապիտալիստական մեթոդից։ Կապիտալիստական երկրներում ինդուստրացումը սովորաբար սկսվում է թեթև արդյունաբերությունից։ Քանի որ թեթև արդյունաբերության մեջ պահանջվում են քիչ ներդրումներ և կապիտալը ավելի արագ է շրջապտույտ գործում, ըստ որում շահույթի ստացումը ավելի հեշտ գործ է, քան ծանր արդյունաբերության մեջ, ապա թեթև արդյունաբերությունը այնտեղ դառնում է ինդուստրացման առաջին օբեկտը։ Միայն երկարատև ժամանակամիջոցից հետո, որի ընթացքում թեթև արդյունաբերությունը շահույթներ է կուտակում և դրանք կենտրոնացնում բանկերում, միայն դրանից հետո է հասնում ծանր արդյունաբերության հերթը և սկսվում կուտակումների աստիճանական տեղաշարժը ծանր արդյունաբերության մեջ՝ նրա ծավալման համար պայմաններ ստեղծելու նպատակով։ Սակայն դա երկարատև պրոցես է, որը պահանջում է մի քանի տասնամյակի մեծ ժամկետ, որի ընթացքում հարկ է լինում սպասել թեթև արդյունաբերության զարգացման և նեղվել առանց ծանր արդյունաբերության։ Հասկանալի է, որ կոմունիստական պարտիան

չէր կարող կանգնել այդ ուղու վրա: Պարտիան գիտեր, որ վերահաս է պատերազմը, որ առանց ծանր ինդուստրիայի հնարավոր չէ երկիրը պաշտպանել, որ անհրաժեշտ է արագ ձեռնամուխ լինել ծանր ինդուստրիայի զարգացմանը, որ այդ գործում ուշանալը նշանակում է տանուլ տալ: Պարտիան հիշում էր Լենինի խոսքերը, որ առանց ծանր ինդուստրիայի անհնարին է պաշտպանել երկրի անկախությունը, որ առանց նրան սովետական կարգերը կարող են կործանվել: Դրա համար էլ մեր երկրի կոմունիստական պարտիան մերժեց ինդուստրացման «սովորական» ուղին և երկրի ինդուստրացման գործը սկսեց ծանր ինդուստրիայի ծավալումից: Դա շատ դժվար, բայց հաղթահարելի էր: Այդ գործում մեծ օգնություն ցույց տվեց արդյունաբերության և բանկերի ազգայնացումը, որը հնարավորություն տվեց միջոցները արագորեն հավաքելու և տեղաշարժելու ծանր ինդուստրիայի մեջ:

Տարակույս չի կարող լինել, որ առանց դրան անհնարին էր այդպիսի կարճ ժամկետում մեր երկիրը դարձնել ինդուստրիալ երկիր:

Երկրորդ, գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականության շնորհիվ:

Գյուղատնտեսության ասպարեզում մեր հետամնացությանը վերջ տալու և երկրին ավելի շատ ապրանքային հաց, ավելի շատ բամբակ և այլն տալու համար, անհրաժեշտ էր գյուղացիական մանր տնտեսությունից անցնել խոշոր տնտեսության, որովհետև միայն խոշոր տնտեսությունը հնարավորություն ունի կիրառելու նոր տեխնիկա, օգտագործելու ագրոնոմիական բոլոր նվաճումները և տալու ավելի շատ ապրանքային արտադրանք: Սակայն խոշոր տնտեսությունը լինում է երկու տեսակի՝ կապիտալիստական և կոլեկտիվ: Կոմունիստական պարտիան գյուղատնտեսության զարգացման կապիտալիստական ուղու վրա չէր կարող կանգնել ո՛չ միայն սկզբունքային նկատառումներից ստիպված, այլև նրա համար, որ



դա ենթադրում է զարգացման շատ երկարատև ուղի և պահանջում է, որ գյուղացիները նախապես քայքայվեն, դառնան բատրակներ: Դրա համար էլ կոմունիստական պարտիան կանգնեց գյուղատնտեսության կոլեկտիվացման ուղու վրա, գյուղացիական տնտեսությունները կոլխոզներում միավորելու միջոցով գյուղատնտեսությունը խոշորացնելու ուղու վրա: Կոլեկտիվացման մեթոդը վերին աստիճանի առաջադիմական մեթոդ դուրս եկավ ո՛չ միայն նրա համար, որ նա չէր պահանջում գյուղացիների քայքայում, այլև հատկապես նրա համար, որ նա հնարավորություն տվեց մի քանի տարվա ընթացքում ամբողջ երկիրը ծածկել խոշոր կոլեկտիվ տնտեսություններով, որոնք հնարավորություն ունեն կիրառելու նոր տեխնիկա, օգտագործելու ագրոնոմիական բոլոր նվաճումները և երկրին տալու ավելի շատ ապրանքային արտադրանք:

Տարակույս չկա, որ առանց կոլեկտիվացման քաղաքականության մենք չէինք կարողանա այդպիսի կարճ ժամկետում վերջ դնել մեր գյուղատնտեսության դարավոր հետամնացությանը:

Չի կարելի ասել, թե պարտիայի քաղաքականությունը չէր հանդիպում ընդդիմադրության: Ո՛չ միայն հետամնաց մարդիկ, որոնք միշտ հրաժարվում են ամեն մի նոր բանից, այլև պարտիայի աչքի ընկնող շատ անդամներ սիստեմատիկաբար ետ էին քաշում պարտիային և ամեն միջոցով աշխատում էին նրան շեղել-տանել զարգացման կապիտալիստական «սովորական» ուղին: Տրոցկիստների և աջերի բոլոր հակապարտիական մեքենայությունները, մեր կառավարության միջոցառումները սաբոտաժի ենթարկելու ուղղությամբ նրանց ամբողջ «աշխատանքը» հետապնդում էին մեկ նպատակ՝ վիժեցնել պարտիայի քաղաքականությունը և արգելակել ինդուստրացման ու կոլեկտիվացման գործը: Սակայն պարտիան չէր ենթարկվում ոչ մեկի սպառնալիքներին, ոչ էլ մյուսների վայնասունին և վստահորեն առաջ էր գնում, չնայելով և ոչ մի բանի:

Պարտիայի մատուցած ծառայությունն այն է, որ նա չէր հարմարվում հետամնացներին, չէր վախենում ընթանալու հոսանքի դեմ և շարունակ պահպանում էր առաջատար ուժի իր դիրքը։ Տարակույս չի կարող լինել, որ առանց այդպիսի կայունության և կոփվածության կոմունիստական պարտիան չէր կարողանա պաշտպանել երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականությունը։

Կարողացա՞վ արդյոք կոմունիստական պարտիան այդպիսի եղանակով ստեղծված նյութական հնարավորությունները ճիշտ օգտագործել ռազմական արտադրություն ծավալելու և Կարմիր Բանակը անհրաժեշտ սպառազինությամբ մատակարարելու համար։

Ես կարծում եմ, որ նա կարողացավ այդ բանը անել, և այն էլ՝ կարողացավ առավելագույն հաջողությամբ։

Եթե չհաշվենք պատերազմի առաջին տարին, երբ արդյունաբերության էվակուացիան դեպի արևելք արգելակեց ռազմական արտադրության ծավալման գործը, ապա պատերազմի մնացած երեք տարիների ընթացքում պարտիան կարողացավ հասնել այնպիսի հաջողությունների, որոնք նրան հնարավորություն տվին ո՛չ միայն մատակարարել ռազմաճակատին բավարար քանակությամբ հրետանի, գնդացիր, հրացան, ինքնաթիռ, տանկ, ռազմամթերք, այլև ռեզերվներ կուտակել։ Ընդ որում, հայտնի է, որ մեր սպառազինությունը որակով ո՛չ միայն չէր զիջում գերմանականին, այլև ընդհանուր առմամբ նույնիսկ գերազանցում էր նրան։

Հայտնի է, որ մեր տանկային արդյունաբերությունը պատերազմի վերջին երեք տարիների ընթացքում տարեկան միջին հաշվով արտադրում էր ավելի քան 30 հազար տանկ, ինքնագնաց և զրահամեքենա։ (Բուռն ծափահարություններ)։

Հայտնի է, այնուհետև, որ մեր ավիացիոն արդյունաբերությունը այդ նույն ժամանակամիջոցում տարեկան արտադրում էր մոտ 40 հազար ինքնաթիռ։ (Բուռն ծափահարություններ)։



Հայտնի է, նույնպես, որ մեր հրետանային արդյունաբերությունը այդ նույն ժամանակամիջոցում տարեկան արտադրում էր բոլոր տրամաչափերի մոտ 120 հազար հրանոթ (բուռն ծափահարություններ), մոտ 450 հազար ձեռքի և հաստոցավոր գնդացիր (բուռն ծափահարություններ), ավելի քան 3 միլիոն հրացան (ծափահարություններ) և մոտ 2 միլիոն ավտոմատ։ (Մափահարություններ)։

Հայտնի է, վերջապես, որ մեր ականանետային արդյունաբերությունը 1942—1944 թվերի ժամանակաշրջանում տարեկան միջին հաշվով արտադրում էր մոտ 100 հազար ականանետ։ (Բուռն ծափահարություններ)։

Հասկանալի է, որ դրա հետ միաժամանակ արտադրվում էին համապատասխան քանակությամբ հրետանային արկեր, զանազան տեսակի ականներ, ավիացիոն ռումբեր, հրացանի և գնդացրի փամփուշտներ։

Հայտնի է, օրինակ, որ միայն 1944 թվին արտադրվել է ավելի քան 240 միլիոն արկ, ռումբ և ական (ծափահարություններ) և 7 միլիարդ 400 միլիոն փամփուշտ։ (Բուռն ծափահարություններ)։

Այս է ընդհանուր առմամբ Կարմիր Բանակին սպառազինություն և ռազմամթերք մատակարարելու պատկերը։

Ինչպես տեսնում եք, դա նման չէ այն պատկերին, ինչ ներկայացնում էր մեր բանակի մատակարարումը առաջին համաշխարհային պատերազմի ժամանակաշրջանում, երբ ռազմաճակատը հրետանու և արկերի քրոնիկական պակաս էր զգում, երբ բանակը կռվում էր առանց տանկերի ու ավիացիայի, երբ յուրաքանչյուր երեք զինվորի տրվում էր մեկ հրացան։

Ինչ վերաբերում է Կարմիր Բանակին պարենամթերք և հագուստ մատակարարելուն, ապա բոլորին հայտնի է, որ ռազմաճակատը այդ տեսակետից ո՛չ միայն որևէ պակաս չէր զգում, այլ նույնիսկ իր մոտ ուներ անհրաժեշտ ռեզերվներ։

Այս է մեր երկրի կոմունիստական պարտիայի աշխատանքի վիճակը պատերազմի սկսվելուց առաջ

ընկած ժամանակամիջոցում և բուն պատերազմի ընթացքում։

Այժմ մի քանի խոսք մոտիկ ապագայում կոմունիստական պարտիայի աշխատանքի պլանների մասին։ Ինչպես հայտնի է, այդ պլանները շարադրված են նոր հնգամյա պլանում, որը պետք է հաստատվի մոտիկ ժամանակներս։

Նոր հնգամյա պլանի հիմնական խնդիրներն են՝ վերականգնել երկրի տուժած շրջանները, վերականգնել արդյունաբերության և գյուղատնտեսության նախապատերազմյան մակարդակը և այնուհետև քիչ թե շատ զգալի չափով գերազանցել այդ մակարդակը։ Չխոսելով արդեն այն մասին, որ մոտիկ ժամանակներս վերացվելու է քարտային սիստեմը (բուռն, երկարատև ծափահարություններ), հատուկ ուշադրություն պետք է նվիրվի լայն սպառման առարկաների արտադրության ընդլայնմանը, աշխատավորության կենսամակարդակի բարձրացմանը՝ բոլոր ապրանքների գները հետևողականորեն իջեցնելու միջոցով (բուռն, երկարատև ծափահարություններ) և ամեն տեսակ գիտահետազոտական ինստիտուտների լայն շինարարությանը (ծափահարություններ), որոնք կարող են գիտությանը հնարավորություն տալ ծավալելու իր ուժերը։ (Բուռն ծափահարություններ):

Ես չեմ տարակուսում, որ եթե պատշաճ օգնություն ցույց տանք մեր գիտնականներին, նրանք կկարողանան մոտիկ ժամանակներս ո՛չ միայն հասնել, այլև անցնել մեր երկրի սահմաններից դուրս գիտության ունեցած նվաճումներից։ (Երկարատև ծափահարություններ):

Ինչ վերաբերում է ավելի երկարատև ժամանակամիջոցի պլաններին, ապա պարտիան մտադիր է կազմակերպել ժողովրդական տնտեսության նոր հզոր վերելք, որը մեզ հնարավորություն տար մեր արդյունաբերության մակարդակը նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ բարձրացնելու, օրինակ,



երեք անգամ։ Անհրաժեշտ է՝ մենք հասնենք այն բանին, որ մեր արդյունաբերությունը կարողանա տարեկան արտադրել մոտ 50 միլիոն տոննա չուգուն (երկարատև ծափահարություններ), մոտ 60 միլիոն տոննա պողպատ (երկարատև ծափահարություններ), մոտ 500 միլիոն տոննա ածուխ (երկարատև ծափահարություններ), մոտ 60 միլիոն տոննա նավթ։ (Երկարատև ծափահարություններ): Այդ պայմանով միայն կարելի է համարել, որ մեր Հայրենիքը ապահովված կլինի ամեն տեսակ պատահականություններից։ (Բուռն ծափահարություններ): Դրա համար կպահանջվի դուցե երեք նոր հնգամյակ, եթե ոչ ավելի։ Բայց այդ բանը կարելի է անել, և մենք պետք է այդ անենք։ (Բուռն ծափահարություններ):

Այս է իմ հակիրճ հաշվետվությունը կոմունիստական պարտիայի մոտավոր անցյալի գործունեության մասին և ապագայի նրա աշխատանքի պլանների մասին։ (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Ձեր գործն է դատել, թե որքան ճիշտ է աշխատել և աշխատում պարտիան (ծափահարություններ), և արդյոք նա չէ՞ր կարող ավելի լավ աշխատել։ (Ծիծաղ, ծափահարություններ):

Ասում են, որ հաղթողներին չեն դատում (ծիծաղ, ծափահարություններ), որ նրանց չպետք է քննադատել, չպետք է ստուգել։ Դա ճիշտ չէ։ Հաղթողներին կարելի է և պետք է դատել (ծիծաղ, ծափահարություններ), կարելի է և պետք է քննադատել ու ստուգել։ Դա օգտակար է ո՛չ միայն գործի համար, այլև հենց հաղթողների համար (ծիծաղ, ծափահարություններ), ավելի քիչ ամբարտավանություն կլինի և ավելի շատ համեստություն կլինի։ (Ծիծաղ, ծափահարություններ):

Ես գտնում եմ, որ ընտրական կամպանիան ընտրողների դատն է կոմունիստական պարտիայի նկատմամբ, որպես կառավարող պարտիայի նկատմամբ։ Իսկ ընտրությունների արդյունքները նշանակելու են

ընտրողների դատավճիռ: (Ծիծաղ, ծափահարություններ): Քիչ արժեք կունենար մեր երկրի կոմունիստական պարտիան, եթե նա վախենար քննադատությունից, ստուգումից: Կոմունիստական պարտիան պատրաստ է ընդունելու ընտրողների դատավճիռը: (Բուռն ծափահարություններ):

Ընտրական պայքարում կոմունիստական պարտիան մենակ չի հանդես գալիս: Նա ընտրություններին գնում է անպարտիականների հետ բլոկ կազմած: Անցյալ ժամանակներում կոմունիստները որոշ անվստահությամբ էին վերաբերվում անպարտիականներին և անպարտիականությանը: Այդ բանը բացատրվում է նրանով, որ անպարտիականության դրոշով հաճախ քողարկվում էին զանազան բուրժուական խմբեր, որոնց շահավետ չէր ընտրողների առաջ հանդես գալ առանց դիմակի: Այդպես էր անցյալում: Սակայն այժմ մեզ մոտ ուրիշ ժամանակներ են: Այժմ անպարտիականներին բուրժուազիայից բաժանում է մի պատնեշ, որը կոչվում է սովետական հասարակակարգ: Այդ իսկ պատնեշը անպարտիականներին կոմունիստների հետ միավորում է սովետական մարդկանց մեկ ընդհանուր կոլեկտիվի մեջ: Ապրելով ընդհանուր կոլեկտիվում, նրանք միասին են պայքարել մեր երկրի հզորության ամրապնդման համար, միասին են պատերազմել և արյուն թափել ռազմաճակատներում հանուն մեր Հայրենիքի ազատության ու վեհության, միասին են կռել ու կոփել հաղթանակը մեր երկրի թշնամիների դեմ: Նրանց միջև տարբերությունը միայն այն է, որ առաջինները գտնվում են պարտիայի շարքերում, իսկ մյուսները՝ ոչ: Բայց այդ ձևական տարբերություն է: Կարևորը այն է, որ թե սրանք և թե նրանք կերտում են միևնույն ընդհանուր գործը: Դրա համար էլ կոմունիստների և անպարտիականների բլոկը բնական ու կենսական գործ է: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Վերջում թույլ տվեք շնորհակալություն հայտնել



ձեզ այն վստահության համար, որ դուք ցույց տվիք ինձ (Երկարատև, երկար ժամանակ չդադարող ծափահարություններ: Տեղից բացականչություն. «Բոլոր հաղթանակների մեծ զորավար ընկեր Ստալինին, ուռա՜»), առաջադրելով Գերագույն Սովետի դեպուտատության իմ թեկնածությունը: Կարող եք չտարակուսել, որ ես կաշխատեմ արդարացնել ձեր վստահությունը: (Բոլորը ոտքի են կանգնում: Բուռն, երկար ժամանակ չդադարող ծափահարություններ, որոնք վերածվում են օվացիայի: Դահլիճի զանազան ծայրերից հնչում են բացականչություններ. «Կեցցե՜ մեծ Ստալինը, ուռա՜»: «Ժողովուրդների մեծ առաջնորդին. ուռա՜»: «Փա՜ռք մեծ Ստալինին»: «Կեցցե՜ համաժողովրդական թեկնածու ընկեր Ստալինը»: «Մեր բոլոր հաղթանակները կերտող ընկեր Ստալինին՝ փա՜ռք»):

## ՀՐԱՄԱՆ

## ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐԻ

**23 փետրվարի 1946 թ. № 8 քաղաք Մոսկվա**

*Ընկեր կարմիրբանակայիննե՛ր և կարմիրնավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր, սպանե՛ր ու գեներալնե՛ր։ Այսօր մենք տոնում ենք Կարմիր Բանակի գոյության 28-րդ տարեդարձը։*

*Կարմիր Բանակը 28-րդ տարեդարձը դիմավորում է իր ուժերի ծաղկման շրջանում, գերմանական և ճապոնական իմպերիալիստների դեմ տարած հաղթանակների փառքով պսակված։ Երկարատև և ծանր պատերազմից Կարմիր Բանակը դուրս եկավ որպես միանգամայն ժամանակակից սպառազինություն, ամենափորձված և կոփված հրամանատարներ ունեցող, բարոյական-մարտական բարձր հատկություններով օժտված առաջնակարգ բանակ։*

*Ֆաշիստական զավթիչների դեմ մղված պատերազմում Կարմիր Բանակը գտնվեց իր մեծ խնդիրների բարձրության վրա, իրեն ցույց տվեց որպես սովետական պետության շահերի հավատարիմ ու հուսալի պաշտպան։ Մեր մարտիկները, սպաները և գեներալները արդարացրին ժողովրդի վստահությունը և պատվով կատարեցին իրենց պարտքը Հայրենիքի հանդեպ։ Սովետական մարդիկ ակնառու կերպով համոզվեցին, որ նրանք համարձակ կերպով կարող են հույս դնել Կարմիր Բանակի վրա։ Մեր երկրի բոլոր ժողովուրդները իրավամբ պարծենում են իրենց բանակով, նրա հաղթանակներով և հարգում են Հայրենիքի համար մղված մարտերում քաջի մահով զոհված հերոսների սրբազան հիշատակը։*

*Կարմիր Բանակի հռչակավոր հաղթանակները բացատրվում են ամենից առաջ նրանով, որ նա իսկա-*



*կան ժողովրդական բանակ է և պաշտպանում է իր ժողովրդի շահերը։ Սովետական մարդիկ ջերմորեն սիրում են իրենց բանակը և շարունակ հոգ են տանում նրա հզորությունը ամրապնդելու մասին։ Այդ հոգատարությունը առանձնապես վառ կերպով երևան եկավ Հայրենական մեծ պատերազմի դժվարին տարիներին։ Մեր ամբողջ ժողովուրդը, առանց ձեռքները ծալելու, գիշեր ու ցերեկ աշխատում էր ռազմաճակատի համար, հաղթանակի համար։ Առանց բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի անձնազոհ աշխատանքի, առանց նրանց նյութական և բարոյական աջակցության Կարմիր Բանակը չէր կարողանա հաղթահարել թշնամուն։*

*Կարմիր Բանակի հաղթանակները բացատրվում են այնուհետև նրանով, որ նրա մասին հոգ է տանում և նրան դաստիարակում է կոմունիստական պարտիան։*

*Կատարելով մեծ Լենինի պատգամները, սովետական ժողովուրդը, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, մեր Հայրենիքը հետամնաց երկրից դարձրեց առաջավոր, ագրարայինից՝ ինդուստրիալ։ Դրանով իսկ բոլոր անհրաժեշտ նյութական հնարավորությունները ստեղծվեցին թշնամիների դեմ Կարմիր Բանակի հաջող պայքարի համար։*

*Հայրենական մեծ պատերազմի տարիներին կոմունիստական պարտիան մեր երկիրը համախմբեց ռազմական միասնական լագերի մեջ և ժողովրդի ու բանակի բոլոր ջանքերը ուղղեց մեկ ընդհանուր նպատակի՝ թշնամու ջախջախմանը։ Կոմունիստական պարտիան սովետական ռազմիկներին բացատրում էր պատերազմի իմաստն ու նպատակները, նրանց մեջ դաստիարակում էր սեր դեպի Հայրենիքը, ամրապնդում էր մարտական ոգին, պատվաստում էր նրանց անվեհերություն և կարգապահություն։ Այդ բոլորը կարևոր պայման հանդիսացան մեր հաղթանակի համար։*

Պատերազմն ավարտելով թշնամիների դեմ տարած հաղթանակով, Սովետական Միությունը թևակոխեց իր տնտեսական զարգացման նոր, խաղաղ ժամանակաշրջանը։ Ներկայումս սովետական ժողովրդի առաջ կանգնած է մեկ խնդիր՝ նվաճված դիրքերը ամրապնդելով առաջ շարժվել դեպի տնտեսական նոր վերելք։ Մենք չենք կարող սահմանափակվել այդ դիրքերի ամրապնդումով, որովհետև դա կհանգեցներ լճացման. մենք պետք է է՛լ ավելի առաջ շարժվենք, որպեսզի պայմաններ ստեղծենք ժողովրդական տնտեսության նոր հուժկու վերելքի համար։ Մենք պետք է ամենակարճ ժամկետում բուժենք թշնամու կողմից մեր երկրին պատճառված վերքերը, և վերականգնենք ժողովրդական տնտեսության զարգացման նախապատերազմյան մակարդակը, այն հաշվով, որ մոտակա ժամանակում զգալի չափով գերազանցենք այդ մակարդակը, բարձրացնենք ժողովրդի նյութական բարեկեցությունը և է՛լ ավելի ամրապնդենք սովետական պետության ռազմա-տնտեսական հզորությունը։

Նոր պայմաններում Կարմիր Բանակը պետք է արթուն կերպով պահպանի սովետական ժողովրդի խաղաղ ստեղծարար աշխատանքը, հուսալի կերպով ապահովի Սովետական Միության պետական շահերը և թշնամիների համար անմատչելի դարձնի մեր Հայրենիքի սահմանները։

Պատերազմի ժամանակ Կարմիր Բանակի մարտիկների, սպաների և գեներալների գլխավոր խնդիրն էր՝ նվաճել հաղթանակը, իրենց ուժերն ու գիտելիքները հմտորեն գործադրել թշնամուն լիովին ջախջախելու համար։ Խաղաղ ժամանակ առանց բացառության բոլոր մարտիկների, սպաների ու գեներալների առաջնակարգ խնդիրն է՝ անընդհատ կատարելագործել իրենց ռազմական և քաղաքական գիտելիքները։ Բոլոր կարմիրբանակայինները և սերժանտները պետք է անդուլ կերպով ուսումնասիրեն ռազմական գործը, գիտենան իրենց զենքը և անթերի կատարեն ծառա-



յության գծով իրենց ունեցած պարտականությունները։ Սպայական կազմից այժմ, ինչպես երբեք, պահանջվում է ստորադրյալներին լավ ուսուցանելու և դաստիարակելու հմտություն։ Պատերազմի տարիներին Կարմիր Բանակի սպաները և գեներալները լավ տիրապետեցին մարտադաշտում զորավարելու վարպետությունը։ Այժմ բոլոր սպաներն ու գեներալները պետք է կատարելապես տիրապետեն խաղաղ իրադրության մեջ զորքերին ուսուցանելու և դաստիարակելու վարպետությունը։

Հայրենական մեծ պատերազմը ռազմական գործի մեջ շատ նոր բան մտցրեց։ Ճակատամարտերի դաշտերում ձեռք բերված մարտական փորձը հարուստ գանձարան է զորքերին ուսուցանելու և դաստիարակելու համար։ Դրա համար էլ բանակի ամբողջ նախապատրաստությունը պետք է անցկացնել անցած պատերազմի փորձը հմտորեն յուրացնելու հիման վրա։ Այդ փորձը անհրաժեշտ է նաև բազմակողմանիորեն օգտագործել սպայական կադրերի տեսական կրթության և սովետական ռազմագիտության հետագա աճման համար։ Պետք է հիշել, որ ռազմական գործը անընդհատ և արագ զարգանում է։ Կարմիր Բանակը պարտավոր է ոչ միայն հասնել ռազմական գործի զարգացման ետևից, այլև առաջ շարժել այն։

Կարմիր Բանակը իր սպառազինության մեջ ունի նրա մարտական հզորության հիմքը կազմող առաջնակարգ տեխնիկա։ Խնդիրն է՝ գերազանց իմանալ այդ տեխնիկան, հմտորեն տիրապետել այն և պահպանել աչքի լույսի պես։

Զորքի ուսուցման և դաստիարակության գործում հաջողությունը անհնարին է առանց ամուր կարգապահության և զինվորական խիստ կարգ ու կանոնի, որոնց պահպանումը բանակի ամբողջ կազմի ամենագլխավոր պարտականությունն է։ Կարգապահության և կարգ ու կանոնի հենարանը առաջին հերթին պետք է լինեն մեր հրամանատարական կադրերը, այդ թվում

*ավագները և սերժանտները՝ կարմիրբանակայիններին ամենամոտիկ և անմիջական պետերն ու դաստիարակները։*

*Կարմիր Բանակի մարտիկները, սպաները և գեներալները մեծ ծառայություններ ունեն ժողովրդի և Հայրենիքի հանդեպ։ Սակայն դա չպետք է հասցնի գոռոզամտության և բարեհոգության։ Չգոռոզանալ իրենց մատուցած ծառայություններով, այլ բարեխղճորեն աշխատել իրենց պոստում, բոլոր ուժերն ու գիտելիքները ի սպաս դնելով Կարմիր Բանակի օգտին— ահա թե ինչ է պահանջվում սովետական յուրաքանչյուր ռազմիկից։*

*Ընկեր կարմիրբանակայիննե՛ր և կարմիրնավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր, սպանե՛ր ու գեներալնե՛ր։*

*Սովետական կառավարության և մեր կոմունիստական պարտիայի անունից ողջունում և շնորհավորում եմ ձեզ Կարմիր Բանակի 28-րդ տարեդարձի առթիվ։*

*Ի նշանավորումն Կարմիր Բանակի օրվա ՀՐԱՄԱՅՈՒՄ ԵՄ.*

*Այսօր, փետրվարի 23-ին, մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում, Միութենական ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում և հերոս քաղաքներ Լենինգրադում, Ստալինգրադում, Սևաստոպոլում և Օդեսայում* սալյուտ տալ հրետանային քսան համազարկով։

*Կեցցե՛ մեր հաղթական Կարմիր Բանակը։*

*Կեցցե՛ մեր հաղթական Ռազմա-Ծովային Նավատորմը։*

*Կեցցե՛ մեր պանծալի կոմունիստական պարտիան։*

*Կեցցե՛ սովետական մեծ ժողովուրդը։*

*Կեցցե՛ մեր հզոր Հայրենիքը։*

**ՍՍՌՄ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՆԵՐԱԼԻՍԻՄՈՒՍ**

**Ի. ՍՏԱԼԻՆ**



# ԹԵՄԱՏԻԿ ՊԼԱՆ

## ՄՈՍԿՎԱ ՔԱՂԱՔԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳԻ ԸՆՏՐՈՂՆԵՐԻ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՄ ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՓԵՏՐՎԱՐԻ 9-ԻՆ ԱՐՏԱՍԱՆԱԾ ՃԱՌԻ ԿԱՊԱԿՑՈՒԹՅԱՄԲ ԿԱԶՄԱԿԵՐՊՎՈՂ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ

1. Երկրորդ համաշխարհային պատերազմի ծագումն ու բնույթը:

2. Սովետական Միության պատմական հաղթանակը Հայրենական պատերազմում:

3. Ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման բոլշևիկյան քաղաքականության նշանակությունը մեր երկրի ակտիվ պաշտպանության նախապատրաստման գործում:

4. Լենին-Ստալինի պարտիան—սովետական ժողովրդի հաղթանակի ոգեշնչողն ու կազմակերպիչն է 1941—1945 թ. թ. Հայրենական պատերազմում:

5. Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի հետագա խնդիրները:

6. Կոմունիստների և անկուսակցականների բլոկի ուժն ու կենսունակությունը:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

1. ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ՃԱՌԸ

Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թվի փետրվարի 9-ին . . . 5

2. ՀՐԱՄԱՆ

ՍՍՌ Միության Պաշտպանության ժողովրդական Կոմիսարի 23 փետրվարի 1946 թ. № 8 քաղաք Մոսկվա . . . . . . . . . . 26

3. ԹԵՄԱՏԻԿ ՊԼԱՆ

Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում ընկեր Ի. Վ. Ստալինի փետրվարի 9-ին արտասանած ճառի կապակցությամբ կազմակերպվելիք զեկուցումների և դասախոսությունների . . . . . . . . . . 31

Պատասխանատու խմբագիր՝ Ս. ԱՐԵՇՅԱՆ

*ՎՖ 00276 պ. № 257 տիրաժ 5.000*
*Ստորագրված է տպագրության 26/II 1946 թ.*

Հայկական ՍՍՌ ժողկոմսովետին կից Պոլիգրաֆ. և հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան